## ՄԻՏՔ ԵՒ ԱՐՈՒԵՍՏ

### «Ո՞ՒՐ Կ'ԵՐԹԱՅ ՍԻՆԷՄԱՆ»

«Էքսէլսիօր», այս խորագրին տակ, հարցարան մը բացած էր։ Հարցարանին պատասխանողներն են գիտուններ, դերասաններ, բեմադրիչներ եւ թատրոնի ու սինէմայի տնօրէններ։

Հարցարանին հետաքրքրական մասն այն է թէ նորագոյն գիւտերը — գոյն, քանդակագծում (relief), — կրնա՞ն ազդեցութիւն մը գործել շարժանկարին վրայ։ Հնասէր շարժանկարը, որ տեղ կը շինէ, երբ մտնէ տուներէ ներս, ապահովաբար մեծ տագնապ մը ստեղծէ, ինչպէս ատեն խօսուն շարժանկարը։

Այսուհանդերձ խօսուն շարժանկարը տակաւին չէ տիրապետած հրապարակին, որովհետեւ ազգայնացուց անէծման, զոր միջազգայնացուցած էր համր սինէման։ Խօսուն շարժանկարին ուղղուած մեղադրանքներէն մէկն ալ այն է, որ ... — թարգմանութեան հարցը։ Եւ երբ շարժանկարի ընկերութիւնները վերջերս ուզեցին հաւասարակշռել ծախքերը՝ կրճատելով արուեստագէտներուն վճարումները, ...

... թեան ենթարկելով մարդկային մտքին բոլոր երեւոյթները։ Ցնցումը կը շարունակուի եւ այսօր, Մուսոլինիի բառով, տապալած կուռքերու կը նմանին այն բոլոր մեծ գաղափարները, — հաւասարութիւն, արդարութիւն, անհատական անկախութիւն, ժողովրդապետութիւն, — որոնք տարիներէ ի վեր տիրապետեր են քաղաքակիրթ ժողովուրդներուն վրայ։ Արդի տագնապը կը ծագի այն գաղափարէն, որ կը տարածուի հետզհետէ, թէ անհրաժեշտ է քանդել ու հարթել այդ բոլոր ժառանգութիւնները։

Եւ ահա այս անձկութեան, այս խռովքներուն մէջ բազմութիւններ կան, որ կը սպասեն մարդու մը, փրկիչի մը։ Կրօնական սպասում մըն է այդ։

Ֆրանսայի մէջ, մասնաւոր նկարագիր մը ունի հարցը։ Հիւանդ այս աշխարհին մէջ, Ֆրանսա քիչ թէ շատ կը պահէ իր հաւասարակշռութիւնը։ Այսուհանդերձ այստեղ ալ հող կայ մարդու մը սպասման։ Ատիկա չի նշանակեր սակայն թէ Ֆրանսա կրնայ հանդուրժել մարդու մը, որ ըլլայ իր միակ առաջնորդը։ Ֆրանսացիին բնական յատկանիշն է քննադատել իր բոլոր ազգային կամ ընկերային կազմակերպութիւնները, չհաւնիլ որ եւ է բանի։ Մնաց որ քաղաքական ներկայ կացութիւնն ալ թոյլ չիտար որ, դիկտատուրա հռչակուի։ Այո՛, Ֆրանսա կը սիրէ պետական հարուածը, բայց ...

...

գոյութիւն ունեցող հակամարտութիւնները, եւ տարածել ժողովուրդներու մէջ հաշտութեան ու միաբանութեան գաղափարները։

ՀՐԱՉԵԱՅ ՏԷՐՈՍԿԻ

### ՄԱՍՆԱԳԻՏԱԿԱՆ ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆ

...

### Այնշթայնի նամակը

#### ՕՐՈՒԱՆ ՀԱՐՑԵՐՈՒ ՄԱՍԻՆ

...

Քարափին վրայ խռնուած էր համակիրներու եւ հետաքրքիրներու հոծ բազմութիւն մը։ Անվերսի քաղաքապետ՝ Պ. Հիւսմանս, որ ըն-...

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԵԱՆՔ

### Հրապարակային մեծ բանախօսութիւն

#### ԸՆԿԵՐ Ն. ՕԶԱՆՋԱՆԵԱՆԻ ՃԱՌԸ

ՄԱՐՍԷՅԼ, 30 Մարտ (ցառաջ). — Հ. Յ. Դաշնակցութեան Շրջ. Կոմիտէին նախաձեռնութեամբ, Մարտ 25ին տեղի ունեցաւ հրապարակային մեծ բանախօսութիւն մը։

Հակառակ պղտոր լուրերու եւ խռովիկներու, գաղութին ընտրանին փութացեր էր տեղ գրաւել «Պրէպան Մարսէյէ»ի ընդարձակ սրահին մէջ։

Ծիրդ ժամանակին եկան բանա-...

... ժողովուրդի կրկին շինարարութիւնը։ Հայը շինարար է իր երկրին մէջ եւ ամենուրեք, հոս Ֆրանսայի մէջ իսկ Հայը շինած է նոյնքան տուներ որքան երկրին մէջ։ Հայուն շինարարութիւն առասպելական է եւ հայրենասիրութիւնը եզակի։ Ու քանի որ մեր ժողովուրդը ունի այս յատկութիւնները, պիտի կրնայ իրականացնել իր նպատակները, որքան ալ դժուարին ըլլան։

Բայց անհրաժեշտ է որ իր քաղաքական նպատակները՝ հեռաւոր կամ մօտաւոր՝ ըլլան յստակ եւ պարզ։ Այնքան ատեն որ Տաճկահայաստանը չէ գրաւուած եւ հայ տարագիր ժողովուրդի իր հայրենիքը չէ վերադարձած, մեր դատը կը մնայ դատ։

Անհրաժեշտ է, որ հայ ժողովուրդի ընդունակ եւ աշխատաւոր տարրերը քաղաքական յստակ ընբռնումներ ունենան ու համախմբուին միացեալ ուժերով, մեծ եւ ...

...

ԱՐԱՄ ԱՐՄԵԱՆ

## ՁԱՅՆԵՐ ԳԱՒԱՌԷՆ

### ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿԻ ՄԱՀՈՒԱՆ 25 ԱՄԵԱԿԸ

ՏԷՍԻՆ, 29 մարտ (Յառաջ). — Խրիմեան Հայրիկի մահուան 25ամեակի առթիւ, Տէսինի Վասպ. Հայր. միութեան նախաձեռնութեամբ կազմակերպուած յարգանքի հանդէսը, որ տեղի պիտի ունենար մարտի 5ին, բանախօսի հիւանդութեան պատճառաւ յետաձգուած էր երեք շաբաթ։ Տեղի ունեցաւ մարտի 26ին, կիրակի կէսօրէ վերջ՝ ժամը 3ին, Հ. Յ. Դ. ժողովրդական Տան սրահին մէջ։ Ներկայ էր ընտրեալ բազմութիւն մը։ Բեմին խորը կը ծածանէր հայկական եռագոյնը։

Հանդէսը բացուեցաւ «Մեր Հայրենիք»ով, զոր նուագեցին ընկ. Ա. Գ. Մելքոնեան (ջութակ) եւ Պ. Ժ. Խրտիկեան (դաշնակ), ժողովրդի յոտնկայս ունկնդրութեամբ։

Նախագահ՝ ընկ. Վ. Հիւսեան մի քանի խօսքով պարզելով հանդէսի նպատակը, իբրեւ բացման խօսք, կարդաց Պ. Հայկ Աճէմեանի «Խրիմեան Հայրիկ» գրքէն հայ եւ օտար զանազան գրողներու հեղինակաւոր կարծիքները, ինչպէս «Մշակ»ի մէջ (1892ին եւ թիւ 23) Գ. Արծրունիի հոյակապ եւ պատմական գրութիւնը, (կաթողիկոսական ընտրութեան առթիւ), Խրիմեան Հայրիկի մասին։ Ա-...

...

Վ. ԽԻՒՍԵԱՆ

---

«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (12)

# ԳԵՏՆԻ ՏԱԿԷՆ

(ԺԱՄԱՆԱԿԱԳՐԱԿԱՆ ԽԱՂ. 1908)

ԾԱՆՕԹ. — 1908ին, երբ ծանօթ դաւանանութեամբ վիժեցաւ ժամանակաւորապէս Վասպուրականի Դաշնակցութեան տարիներ շարունակ պատրաստած վեց վիլայէթներու ընդհանուր համաժողովրդական ապստամբութեան ձեռնարկը եւ երբ դաւանանին անկումէն յետոյ, թուրք կառավարութիւնը 12,000 զինուորով շրջապատեց Այգեստանը՝ թնդանօթներ դնելով շրջակայ բարձրութիւններուն վրայ, առաջարկեց յեղափոխականներուն անձնատուր ըլլալ։ Վասպուրականի դաշնակցական մարմինը թէեւ միջոց ունէր կռուելու, նոյն իսկ պատռելու շղթան ու շրջակայ լեռներն ապաւինելու, բայց չվտանգելու համար իր ընդհ. ազատագրութեան ծրագիրները, ինչպէս նաեւ անտեղեակ՝ կառավարութեան բուն տրամադրութեանը, մտահոգ՝ ժողովուրդի պաշտպանութեամբ, կառավարութեան ու թուրք խուժանին ընդհանուր կոտորածի ձեռնարկելու պարագային, որոշեց պահուըտիլ գետնափոր ջրուղիներու մէջ, յայտարարել իրենց հեռացումը Այգեստանէն, թոյլ տալ որ կառավարութիւնը կատարէ խուզարկութիւնը եւ իր ուզածին պէս սկսելու պարագային՝ դուրս ելլել թաքստոցէն ու գլուխ անցնիլ ժողովրդական ինքնապաշտպանութեան անխուսափելի կռիւին։

Ահա ճիշդ այդ ճակատագրական պարագաներն են, որ կը ներկայացուին այս տեսարանին մէջ, սկզբնական տեսարանները տրուած ըլլալով ՅԱՌԱՋի յունուար 10, 11, 12, 13, 14, 17, 18, 19, 20, 21, 22 եւ 24 թիւերուն մէջ։

---

ԵԴՈՒԱՐԴ. — Ցուցակը պատրաստ է, բայց կարծում էք այժմ ու՞ չէ՞ ամբողջ շրջանները կարենալ ոտքի հա-...

...

Գ. ՄԵԼՔԵԱՆ

(Շարունակելի)

## Հիւսիսային Կովկասի նախկին հրամանատար

### ԶՕՐ. ՊՉԵՐԱԽՈՎ 50,000 ՍՏԵՐԼԻՆ ՀԱՏՈՒՑՈՒՄ ԿԸ ՊԱՀԱՆՋԷ ԱՆԳԼԻԱՑԷՆ

Մօտերս շահեկան դատավարութիւն մը տեղի պիտի ունենայ Անգլիոյ դէմ:

Տաղստանցի Զօր. Պչերախով, որ 1917էն 1919 տէր ու տիրական էր Հիւսիսային Կովկասի եւ Կասպեան շրջանին, իսկ այժմ ... խոհարարութիւն կ'ընէ (համաձայն « Մաթէն »ի), դատ բացած է անգլիական կառավարութեան դէմ, հատուցում պահանջելով իր կրած վնասներուն համար: Զօրավարը ինքզինքը լիազօր ներկայացուցիչը կը համարէ Հիւսիսային Կովկասի զոր կառավարեց 1917էն մինչեւ 1919 յունուար, եւ կը պահանջէ 50,000 ստերլին հատուցում՝ անձնական վնասներու համար:

Իր դատը այս չէ միայն: Զօրավարը աւելի մեծ գումարներ կը պահանջէ անգլ. կառավարութենէն, պատճառաբանելով թէ Կովկասեան եւ Կասպեան շրջանները 150,000 մարդ կորսնցուցին, կռիւը շարունակելով կեդրոնական պետութեանց եւ Թուրքիոյ դէմ, Պրէսթ - Լիթովսքի անձնատուութենէն յետոյ, եւ թէ Անգլիա միլիոնաւոր փութ քարիւղ գրաւեց Սեւ ծովու նաւահանգիստներուն եւ Բագուի մէջ, յանուն Դաշնակիցներուն, ինչպէս եւ 60 միլիոն ստերլին՝ պետական սնտուկէն եւն.:

Լազար Պչերախով, որ Թէրէքի խազախներէն է եւ գնդապետ էր ռուսական բանակին մէջ, 1917ին կը գտնուէր Կասպից ծովուն ափերը, 600 սպաներով եւ 300 զինուորներով: Շուտով իր զօրքին թիւը բարձրացաւ 80,000ի, շնորհիւ իր բացառիկ յատկութեանց եւ Պչերախով սկսաւ շարունակել պատերազմը մէկ կողմէ Գերմանացիներուն եւ Թուրքերուն, միւս կողմէ բոլշեւիկներուն դէմ: Այս վերջինները դաւանան հռչակելով զինքը, գրաւեցին բոլոր գոյքերը: Իսկ սպիտակ Ռուսերը եւ մասնաւորապէս Զօր. Տէնիքին կը մեղադրէին թէ ձախակողմեան դիկտատոր մըն է, թէ ազգայնացուցած է քարիւղի ձեռնարկները ու հորերը, ծառայելով Անգլիոյ շահերուն: Բոլշեւիկներու յաղթութենէն յետոյ, Զօր. Պչերախով ինքն իր գլխուն մնացած, 1920ին փորձեց հատուցում ստանալ յանուն Կովկասեան եւ Կասպեան շրջաններու ժողովուրդներուն: Անգլ. կառավարութիւնը պատասխանեց թէ իր խնդրագիրը նկատի չի կրնար առնուիլ, քանի որ միայն ինքզինքը կը ներկայացնէ: Երկար մտածելէ յետոյ, զօրավարը այժմ անձնական հատուցում կը պահանջէ անգլ. կառավարութենէն, քանի որ չարաչար տուժեց անձնուիրաբար ծառայելով Դաշնակիցներուն եւ քանի որ ոչ միայն իր հարստութիւնը գրաւեցին, այլ եւ արտաւորեցին իր անունը, թշուառութեան մատնելով զինքը: Իր փաստաբանն է Պ. Լէոն Քրիւսիան:



### ՅԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

*ԵՓՐԱՏ նուագախումբի վարչութիւնը խորին ցաւակցութիւն կը յայտնէ իր անդամներէն Պ. Օննիկ Իւթիւճեանի, իր հօր դառնաղէտ մահուան առթիւ: Յուղարկաւորութիւնը կատարուեցաւ 5 Ապրիլ Չորեքշաբթի առաւօտ ժամը 10ին, Մուլինօի գերեզմանատան մէջ:*



Le Gérant : H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Damesme :-: PARIS (13e)

Յ․

Հ․ Դ․

## Փարիզ եւ շրջակայքը

Հ. Յ. Դ. Փարիզի «Ռոստոմ» խումբի ժողովը տեղի կ'ունենայ այս Երեքշաբթի երեկոյ սովորական վայրը: Պարտաւորիչ ներկայութիւն: Կարեւոր օրակարգ:

ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋ. ԿՈՄԻՏԷԻ ԴԱՍԱԽՕՍԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐԸ

ՄԱՐՍԷՅԼԻ Շրջ. Կոմիտէն ընդհ. ընկերական ժողովի կը հրաւիրէ «Աղբիւր Սերոբ» ենթակոմիտէի բոլոր ընկերները վաղը Երկուշաբթի կէս օրէ վերջ ժամը 2.30ին Պատ. Միութեան Դրադարաննին մէջ: Պարտաւորիչ ներկայութիւն: Ներկայ կ'ըլլայ ԿՈՄԻՏԷԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉԸ:

ՄԱՐՍԷՅԼԻ Շրջ. Կոմիտէն ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ «Աւօօ» խումբի բոլոր ընկերներ վաղը Երկուշաբթի կէս օրէ վերջ ժամը 2.30ին իրենց սովորական հաւաքատեղին: Ներկայ կ'ըլլայ ԿՈՄԻՏԷԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉԸ:

# «ՄԱՅԻՍ 28»Ը

## Հ. Հ. ԱՆԿԱԽՈՒԹԵԱՆ 15ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

Նախաձեռնութեամբ՝ Հ. Հ. Պատուիրակութեան

Կը տօնուի Փարիզի մէջ Մայիս 27ին

Շաբաթ գիշեր ժամը 83.0ին մինչեւ առաւօտ

**Petit Journal**ի սրահին մէջ

Կը նախագահէ Ա. ԱՀԱՐՈՆԵԱՆ

Կը խօսի՝ Ա. ԽԱՏԻՍԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին եւ պարեր:

# Զ. Ռ. ՄԻՈՒԹԻՒՆԸ ԿԸ ՏՕՆԷ

## ԱՊՐԻԼ ՏԱՍՆԸՄԷԿԻ ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՍՈՒԳԸ

ՓԱՐԻԶ

23 Ապրիլ Կիրակի երեկոյ ժամը 9ին

ՍԱԼ ԿԱՎՈՅԻ ՄԷՋ, 45, Rue La Boëti, 45.— Métro : Miromesnil

Կը նախագահէ՝ FERDINAND HEROLD

Ընդհ. քարտուղար Ligue des Droits de l'Hommeի

Կը խօսին՝ Պ. ՄԻՔԱՅԷԼ ՎԱՐԱՆԴԵԱՆ

Պ. Պ. ԼԵՒՈՆ ԶՈՐՄԻՍԵԱՆ եւ ԱՆՈՒՇԱՒԱՆ ԳԱԲԻԿԵԱՆ

Prof. FAUCHET, փրոֆ. Փարիզի պետ. երաժշտանոցին

Բացման կը նուագէ օրկով հայկական «Տէր ողորմեա»ն

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին Օրիորդներ NELLY GAUTHIER (թաւ ջութակ), MADELEINE FRIDE (ջութակ), Պարոններ J. GILLES (orgue), եւ P. BAJEUX (Hautbois), բոլորն ալ առաջին մրցանակաւոր Փարիզի պետական երաժշտանոցէն:

Կ'երգէ ՀԱՅԿԱՆՈՅՇ ԹՈՐՈՍԵԱՆ

ՅԱՅՏԱԳԻՐ

| | |
|---|---|
| 1.— Marche funèbre | BEETHOVEN |
| Orgue, թաւջութակ, ջութակ, hautbois | |
| 2.— a) Aria | BACH |
| b) Andante | HAENDEL |
| c) Armenia | MALIPIERO |
| MADELEINE FRIDE | |
| 3.— a) Plainte | CAIX D'HERVELOIS |
| b) La fille aux cheveux de lin | DEBUSSY |
| c) Հերոսին մահը | Ա. ՊԱՐԹԵՒԵԱՆ |
| NELLY GAUTHIER | |
| 4.— a) Oratorio: Prélude | TH. DUBOIS |
| b) Տէ'ր, ողորմեա, դաշն. | PAUL FAUCHET |

ՀԱՅԿԱՆՈՅՇ ԹՈՐՈՍԵԱՆ

ընկերակցութեամբ Orgueի, ջութակի, թաւջութակի եւ hautboisի

Լուսարձակով ցոյց կը տրուին նահատակ մտաւորականները, աճոյրի եւ ջարդերու նկարներ:

| | |
|---|---|
| ԼԻՈՆ | 22 Ապրիլ, Շաբաթ երեկոյ Գ. Թաղապետարանին մէջ |
| ՎԻԷՆ | 23 Ապրիլ, Կիրակի կէսօրին |
| ՎԱԼԱՆՍ | 29 Ապրիլ, Շաբաթ երեկոյ |
| ՌՈՄԱՆ | 30 Ապրիլ, Կիրակի կէսօրին |
| ՄԱՐՍԷՅԼ | 29 Ապրիլ, Շաբաթ երեկոյ |

ՊՐԷՊԱՆ ՄԱՐՍԷՅԼԷ սրահին մէջ

Կը նախագահէ՝ Պ. ՂԵՒՈՆԴ ՄԵԼՈՅԵԱՆ

Մանրամասնութիւնները յաջորդով:

# ԹԱՏԵՐԱԿԱՆ ՇՔԵՂ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

29 ԱՊՐԻԼ ՇԱԲԱԹ ԳԻՇԵՐ ԺԱՄԸ ՃԻՇՏ 8.45ԻՆ

**Salle du Conservatoire**

**2, rue de Conservatoire Métro: Bonne-Nouvelle, Cadet**

## Ա. ՇԱՀԽԱԹՈՒՆԻ

Բարեհաճ մասնակցութեամբ Փարիզի բոլոր հայ դերասաններուն

Կը ներկայացնէ՝ ի նպաստ Ա. ԳՄԲԷԹԵԱՆԻ

## ՏՐԻԼՊԻ

Տոմսերու գինները ժողովրդական՝ 3, 5, 10, 15 եւ 20 փրանք

Կը ծախուին սովորական տեղերը:






































Le Gérant : H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Damesme :-: PARIS (13e)

թեամբ համազգային արտայայտութեան օր է։ Օրը մեր մէկ միլիոն զոհերուն, օրը բողոքի եւ ցասումի ... դէմ, օրը մեր ... մեծ ուխտին։ Հայերս կրազգային մեծ ... բաժնուելէ իրարմէ ըմբռնումներով, համոզումով եւ գործելու խոր ... ։

Եւ սակայն այսօր բոլոր Հայերը միակամ միայն կրնան ըլլալ, մէկ սիրտ կրելով, միասին մտածելով եւ միասին ազալով։

Այլ կերպ մտածողները Հայեր չեն։ Վա՜յ այնպիսիներուն, երբ վաղը ...

...

լաստանի մէջ։

Կարեւորը այն է, որ այսօր մէկ միլիոն հայութիւն հոն համախմբուած կը պահէ իր ֆիզիքական գոյութիւնը։

Հեռու չէ օրը, երբ հայ ժողովուրդը կը տիրանայ իր պատմութեան ժառանգին։ Ասիկա օրէնք է։

Միակ սրբազան պարտքը եւ աշխատանքը, որ կը ծանրանայ հայ կուսակցութիւններու վրայ, ազատութեան հուրը վառ պահելն է, ներկայ եւ ապագայ սերունդներու քով, ամէն անկիւն, ուր ան կը շնչէ։ Որպէս զի երբ հնչէ յեղափոխութեան շեփորը ազատութեան կռիւին եւ պայքարին համար, ապազգայնացած չգտանք այսօրուան եւ վաղուան սերունդները։

Ահա օրուան ազգային միակ մտահոգութիւնը։

ՎԱՀԱՆ ՄԱԶՄԱՆԵԱՆ



## ԱՆԼՈՒՍԻՆ ԳԻՇԵՐ...

—•—

վա՜յ մեզ եթէ 1915ի եղեռնը, որ երէկ մեր ազգն ու հայրենիքը ծղակտոր դարձրեց, եւ մեզ մոխիրների վրայ թողեց, նորէն հէքեաթ դառնայ։

Ա· ԱՀԱՐՈՆԵԱՆ

Այս գիշեր, ապրիլի ազատ գիշեր...

Մեծ Եղեռնի տարեդարձը, դարերու պատմութեան դժխեմ էջերուն մէջ երբեք չտեսնուած... այսօր տասնեւութը երկար ու անմոռանալի տարիներ յետոյ, դարձեալ իր ահաւոր ու սոսկատեսիլ յուշերը կը բերէ աչքերուս, հին վէրքերը ցոյց կու տայ. վէրքեր խորունկ, վէրքեր կսկծալի։

...

Նահատակնե՜ր, նահատակնե՜ր, դուք անշիրիմ խնկելիներ, գիտցէք որ այս բոլորը հէքեաթ չպիտի մնայ, իսկ եթէ հէքեաթ դառնայ, թող ողջ աշխարհ մեղի վայ կարդայ։

Ս· ԸՆՏՐԻԿԵԱՆ

## ԵՍԱՍԷՐ ՀՍԿԱՆ

(ՀԷՔԵԱԹ)

—•—

Օսկար Ուայլտ

Տղաքը, ամէն յետմիջօրէի, դպրոցէն դարձին, կանգ կ'առնէին Հսկային պարտէզին մէջ ու կը խաղային։ Իսկ պարտէզը մեծ էր ու գեղեցիկ։ Փափուկ ... կանաչ ... կանաչ խոտին վրայ ... փայլուն ծաղիկներ, աստղերու նման, ցրուած էին քնքոյշ խոտին վրայ։ Պարտէզին մէջ կային, նաեւ, տասներկու դեղձի ծառեր, որոնք գարնան կը ծածկուէին նուրբ ու վարդագոյն ծաղիկներով, իսկ աշնան՝ համեղ պտուղներով։ Թռչունները կը թառէին անոնց վրայ ու այնքան անուշ կը դայլայլէին որ տղաքը կը դադրեցնէին իրենց խաղը՝ լսելու համար անոնց դեղգեղը։

— Հոս ո՜րքան երջանիկ ենք, — կ'ըսէին տղաքը։

Բայց, Հսկան եկաւ օր մը։ Ան այցելութեան էր գացած իր մարդակեր բարեկամին։ Եօթը տարի մնաց հոն, ու երբ երկու բարեկամներ այլ եւս իրարու ըսելիք բան չունեցան, Հսկան վերադարձաւ իր դղեակը, ու տեսաւ տղաքը, որոնք կը խաղային պարտէզին մէջ։

— Ի՞նչ կը փնտռէք հոս, — գոչեց ան՝ իր խոպոտ ձայնով ու տղաքը փախան, — իմ պարտէզս միայն իմս է. ամէն ոք պէտք է լաւ հասկնայ այդ բանը. ոչ ոքի թոյլ պիտի տամ խաղալու հոն։

Ու ան բարձր պատեր շինեց պարտէզին շուրջ եւ դրաւ ցուցատախտակ մը, — «Ով որ բռնուի ներսը, խստօրէն պիտի պատժուի»։

...

Բայց, գարունը չեկաւ, ինչպէս եւ ամառը։ Աշունը բերաւ ոսկեղէն պտուղներ ամէն պարտէզի. իսկ Հսկային պարտէզին՝ ոչինչ։

— Ան մեծ եսասէր մըն է, ըսաւ աշունը։

Այդ պատճառաւ, Հսկային պարտէզին մէջ կը տիրէր յաւիտենական ձմեռ, ու ձիւնը, Հիւսիսային հովը եւ ցուրտը կը պարէին ծառերուն միջեւ։

Առաւօտ մը, երբ դեռ իր անկողինէն ելած չէր Հսկան, լսեց նուագի ձայն։ Մեղեդին քնքշօրէն չոյեց իր լսողութիւնը, ու ան խորհեցաւ թէ դուրսէն կ'անցնին արքայական նուագածուներ։ Իրականին մէջ, փոքրիկ թռչուն մըն էր երգողը՝ պատուհանին եռին. բայց Հսկան վաղո՜ւց էր որ իր պարտէզին մէջ լսած չէր թռչունի դայլայլ։ Ու իրեն այնպէս թուեցաւ թէ ատիկա աշխարհի ամենալաւագոյն նուագն էր։ Այն ատեն, կարկուտը դադրեցաւ պարելէ, Հիւսիսային հովուն շունչը կասեցաւ եւ Հսկային ննջասենեակին պատուհանէն ներս թափանցեց թեթեւ բուրում մը։

— Անպայման եկած է, վերջապէս, գարունը, ըսաւ Հսկան ու, ելլելով անկողինէն, նայեցաւ դուրս։

Ու ի՞նչ տեսնէ։

Աշխարհի ամենատարօրինակ տեսարանը։

...

## ՄԱՄՈՒԼ

### Հայ մշակոյթը

—•—

«Յուսաբեր» կը գրէ այս խորագրին տակ (8 Ապրիլ)·

— «Կը պայքարինք, դարերէ ի վեր, մեր գոյութեան պահպանման, մեր քաղաքական ճակատագրին կերտման համար։

Մեր այս պայքարին մէջ, որ բարդ է ու բազմերանգ, մշակոյթը առաջնակարգ դիրքերու վրայ է. առաջնագոյնը թերեւս, այս օրերուն։

Մշակոյթ, — բառ մը միայն, նոր բացատրութիւն մը, որ դարերու բովանդակութիւնը կ'ընդգրկէ, դառնալով ցեղի մը բազմատեսակ կա... եւ մեր մշակոյթը։

Կ'ապրինք բացառիկ, արտակարգ պայմաններու մէջ, ունի՞նք գիտակցութիւնը. թերեւս, չափով մը. բայց ունի՞նք համապատասխան ճիգը, լարուած, գերագոյն աշխատանքը՝ հայ մշակոյթը ուռճացնելու, զայն դարձնելու համար հայ ցեղին վաւերական ու յաւիտենական պատկերը. անոր դրոշմն ու քանդակը ժամանակին ու միջոցին մէջ։

Չենք կրնար ըսել այո՛, որովհետեւ ինչ որ կ'ընենք հայ մշակոյթին ու անոր ճիւղերուն համար, ըրած ենք միշտ, աւանդաբար, «ազգասիրաբար», նոյն իսկ իբրեւ բարեգործութիւն. ազքատախնամի հոգեբանութեամբ. որբախնամի բարի այլ անբաւական ըմբռնումով...։ Բայց երբեք մեզ պրկող տագնապին գիտակցութեամբը. երբեք ցեղային ...

...

Թարգմ· ՍՕՍԵԱՅ ՏԷԱՆ



## ԳԵՏՆԻ ՏԱԿԷՆ

(ԺԱՄԱՆԱԿԱԳՐԱԿԱՆ ԽԱՂ· 1908)

■■■■■■■■

Բ· ԿԻՆ· — Ո՜վ գիտէ, աղջիկ, կ'ըսեն որ վերջին գիշերը դուրս էին մընացեր, տեղ տուող չի եղեր ... Քա՜, մէկը դուրս բերին, որ չի երեւիր ...

Ա· ԿԻՆ· — Շրջապատեցին։

Բ· ԿԻՆ· — Թեւերը բռնեցին։

Գ· ԿԻՆ· ...

...

կաւ խեղճը։

Ա· ԿԻՆ· — Շուրջը կը խմբուէին։

Գ· ԿԻՆ· — Ոստիկանապետը մօտեցաւ, բան մը կը հարցնէ։

Բ· ԿԻՆ· — Բայց ան չի պատասխաներ, գլուխը ծռեր է։

Գ· ԿԻՆ· — Վեր վերցուցին գլուխը, ...

...

հակները կը զօրացնեն, նոր զօրք կը հասնի։

Բ· ԿԻՆ· — Քա՜, տես, Տաճատը, Տաճատ։

Ա· ԿԻՆ· — Ո՞ր Տաճատը։

Բ· ԿԻՆ· — Քա Տաճատը, Դաւօն զարնող Տաճատը։

Ա· ԿԻՆ· — Բայց դեռ տղայ է, խե՜ղճ տղայ։

Բ· ԿԻՆ· — Ոտքը բոպիկ, գլուխը բաց, վայ քո մէրկան, խե՜ղճ Տաճատ։

Ա· ԿԻՆ· — Ամէնքն ալ ջուրի մէջէն է կուգան, մինչեւ ծունկերը մերկ ...

...

Դ· ՄԵԼԻՔԵԱՆ

(Շարունակելի)

## Զ. Ո. ՄԻՈՒԹԻՒՆԸ ԿԸ ՏՕՆԷ
## ԱՊՐԻԼ ՏԱՍՆԸՄԷԿԻ ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՍՈՒԳԸ

ՓԱՐԻԶ

Այսօր կիրակի երեկոյ ժամը 9ին

*ՍԱԼ ԿԱՎՈՅԻ ՄԷՋ*, 45—47, Rue La Boëtie, 45—47, — Métro : Miromesnil

կը նախագահէ՝ **FERDINAND HEROLD**

*Ընդհ. քարտուղար* Ligue des Droits de l'Homme*ի*

կը խօսին՝ Պ. ՄԻՔԱՅԷԼ ՎԱՐԱՆԴԵԱՆ

Պ. Պ. ԼԵՒՈՆ ԶՈՐՄԻՍԵԱՆ ԵՒ ԱՆՈՒՇԱՒԱՆ ԳԱԲԻԿԵԱՆ

**Prof. FAUCHET,** փրոֆ. Փարիզի պետ. երաժշտանոցին

*Բացման կը նուագէ* օրկոյ *հայկական « Տէր ողորմեա »ն*

*Գեղարուեստական բաժնին կը մասնակցին Օրիորդներ* **NELLY GAUTHIER** (*Թաւ ջութակ*), **MADELEINE FRIDE** (*ջութակ*), *Պարոններ* **J. GILLES** (orgue), *եւ* **P. BAJEUX (Hautbois)** *եւ բոլորն ալ առաջին մրցանակաւոր Փարիզի պետական Երաժշտանոցէն :*

Կ'երգէ ՀԱՅԿԱՆՈՅՇ ԹՈՐՈՍԵԱՆ

*ՅԱՅՏԱԳԻՐ*

| | |
|---|---|
| **1.— Marche funèbre** | **BEETHOVEN** |
| Orgue, *թաւջութակ*, *ջութակ*, hautbois | |
| **2.— a) Aria** | **BACH** |
| **b) Andante** | **HAENDEL** |
| **c) Armenia** | **MALIPIERO** |
| MADELEINE FRIDE | |
| **3.— a) Plainte** | **CAIX D'HERVELOIS** |
| **b) La fille aux cheveux de lin** | **DEBUSSY** |
| c) Հերոսին մահը | Ա. ՊԱՐԹԵՒԵԱՆ |
| NELLY GAUTHIER | |
| **4.— a) Oratorio: Prélude** | **TH. DUBOIS** |
| b) Տէ՛ր, ողորմեա, դաշն. | **PAUL FAUCHET** |

ՀԱՅԿԱՆՈՅՇ ԹՈՐՈՍԵԱՆ

*ընկերակցութեամբ* Orgue*ի*, *ջութակի*, *թաւջութակի եւ* hautbois*ի*

Լուսարձակով ցոյց կը տրուին նահատակ մտաւորականները, աքսորի եւ ջարդերու նկարներ :

Ծախքերու մասնակցութեան համար 2 փրանք



Le Gérant : H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN)

17, Rue Damesme :-: PARIS (13e)

## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ ԴՊՐՈՑԱՍԷՐԻ ՍԱՆՈՒՑ ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ

ԱՅՍՕՐ ԿԻՐԱԿԻ ԿԷՍ ՕՐԷ ՎԵՐՋ ԺԱՄԸ 3ԻՆ

**"Petit Journal„***ի սրահին մէջ*

**21, Rue Cadet Métro: Cadet**

*ՎԱՐԺԱՐԱՆԻՆ ՇՐՋԱՆԱՒԱՐՏՈՒՀԻՆԵՐԸ ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՆԵՆ*

«ՄՈՎԻՆԱՐ» ՕՓԷՐԷԹԸ (2 արար)

Հեղինակութիւն՝ *ԱՐԱՄ ԶԱՐԸԴԻ*, երաժշտութիւն՝ փրոֆ. *Գ. ԱԼԷՄՇԱՀի*

Կը մասնակցին Օր. Ի ՊԻՒԼՊԻՒԼԵԱՆ, Պ. Պ. Ժ. ՄԱՐԻԿԵԱՆ եւ Ժ. ՎԱՐԴԱՆԵԱՆ: Բեմադրութիւն Պ. Ա. ՇԱՀԽԱԹՈՒՆԻի

ԳԻՆ ՏՈՄՍԵՐՈՒ 20, 15 ԵՒ 10 ՖՐԱՆՔ

*ԽՄԲԵՐԳՆԵՐ.—* երաժշտական բաժնի ղեկավար յայտնի երաժշտագէտ փրոֆ. *Գ. ԱԼԷՄՇԱՀ*,

*«ՃԱՓՈՆԱԿԱՆ ՀԱՐՍԱՆԵԿԱՆ ԹԱՓՕՐԸ» (լապտերներու պարով)*, ղեկավարութեամբ՝ վարժարանի մարզանքի ուսուցչուհի՝ Mlle LAHITTE*ի*

*ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻՆ Պ. Ֆ. ԱՂԱԶԱՐԵԱՆ ԵՒ ԾԱՆՕԹ ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏՆԵՐ*

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՃՈԽ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

29 ԱՊՐԻԼ ՇԱԲԱԹ ԳԻՇԵՐ ԺԱՄԸ ՃԻՇԴ 8.45ԻՆ

**Salle du Conservatoire**

**2, rue de Conservatoire Métro: Bonne-Nouvelle, Cadet**

Ա. ՇԱՀԽԱԹՈՒՆԻ

Բարեհաճ մասնակցութեամբ Փարիզի բոլոր հայ դերասաններուն

*կը ներկայացնէ՝ ի նպաստ* Ա. ԳՄԲԷԹԵԱՆԻ

ՏՐԻԼՊԻ

Յ.

Հ. Դ.

## Փարիզ եւ արուարձաններ

ՀՐԱՋԴԱՆ եւ ԱՂԲԻԻՐ - ՍԵՐՈԲ խումբերու միացեալ նիստը վաղը Երկուշաբթի երեկոյ ժամը 8.30ին 32, Ave. des Gobelinsի վերնայարկը: Կարեւոր օրակարգ: Ներկայ պիտի ըլլայ Փարիզի ԿՈՄԻՏԷԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉԸ:

ՓԱՐԻԶԻ «Քրիստափոր» խումբի ժողովը յառաջիկայ Չորեքշաբթի, ժամը 8.30ին, 32, Ավընիւ տէ Կոպլէնի վերնայարկը: Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն:

—o—o—

ԻՍԻ-ԼԷ-ՄՈՒԼԻՆՈՅԻ Սիամանթօ - Վարուժան գրադարանը (245, rue J. J. Rousseau), բաց է երկուշաբթի եւ Հինգշաբթի իրիկուններ ժամը 8.30ին: Ստացած ենք նոր գիրքեր: Ակումբի սրահը վարձու կը տրուի ժողովներու:

## Գաւառ

ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋԱՆԱՅԻՆ ԿՈՄԻՏԷՆ ընկերական ընդհանուր ժողովի կը հրաւիրէ Մարսէյլի եւ շրջաններու (Սէն – Ժէռոմ, Սէն – Մարկրիտ, Սէն – Լու, Սէն – Ժիւլիէն, Պուլվար Օտտօ, Սէնթ – Անթուան) կոմիտէներու, ենթակոմիտէներու եւ խումբերու բոլոր ընկերները, ԱՅՍՕՐ, Կիրակի, ժամը 2ին, ծանօթ սրահին մէջ:

Կը զեկուցանէ Ընկ. Կ. ՍԱՍՈՒՆԻ:

---

Ստեփան Քոչարեան խորին վիշտով յայտնում է իր բարեկամներին իր անզուգական ընկերոջ՝ ՕՀԱՆ ԿԱՐՈՅԻ, անժամանակ մահուան մասին, որ տեղի ունեցաւ, հինգշաբթի, ապրիլ 27ին, առաւօտեան ժամը 11ին, Փարիզի Պրուսէ հիւանդանոցում:

×

ՏԷՍԻՆԻ վասպ. Հայր. Միութեան վարչութիւնը եւ բոլոր հայրենակիցները իրենց խորին ցաւակցութիւնը կը յայտնեն հայրենակից ՕՀԱՆ ԿԱՐՈՅԻ դառնաղէտ մահուան առթիւ:

×

Խորին ցաւակցութիւն կը յայտնեմ դպրոցական (Աղթամար) եւ գաղափարական ընկերոջս՝ ՕՀԱՆ ԿԱՐՈՅԻ կսկծալի եւ վաղաժամ մահուան առթիւ:

Տէսին — Վ. ՀԻՒՍԵԱՆ

---

## Ընկերահաւաքական թէյասեղան

կազմակերպուած՝ Հ. Յ. Դ. ԻՍԻ-ԼԷ-ՄՈՒԼԻՆՈՅԻ «ՄՋՕ» ԽՈՒՄԲԻՆ ԿՈՂՄԷ

Այսօր կիրակի, կէս օրէ վերջ ժամը 2.30ին

Պ. Բանիկեանի սրճարանին մէջ, 6bis, Bld. Rodin.

Կը հրաւիրուին քոյր խումբերու բոլոր ընկերները, եւ մասնաւորապէս Շավիլի Արղութեան խումբի բոլոր ընկերները: Ներկայ կ'ըլլայ Կ. Կ.ի ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉԸ:

Մուտքը՝ 5 ֆրանք:

---

## Մանկապարտէզի հանդէս

ՓՈՐԹ ՏԻԹԱԼԻԻ ԵՒ ՇՐՋԱՆԻ Մանկապարտէզի ցերեկոյթը այսօր կիր. կէս օրէ վերջ ժամը 2.30ին, 2, rue de la Mairieի (Gentilly) սրահին մէջ: Բացման խօսք՝ Պ. Պ. ՎԱՐԴԱՆԵԱՆ:

Կը բանախօսէ՝ Պ. ՀՐԱՉ ԵՐՈՒԱՆԴ

Գեղարուեստական բաժին.— մանկական երգեր, արտասանութիւն, ճայկական պար եւ զաւեշտ մը փոքրիկներու կողմէ:

Մուտք՝ 5 ֆրանք:

---



---

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Վերժին Թորոսեան կը փնտռէ իր եղբօրորդին՝ Գրիգոր Չիչէքեան (կամ Չիչէք): Իմացնել իր հօրաքրոջ՝ Verginie Truja, Via Principe Amedeo N. 8, IIo. Piano, x Bari (Italia):

— Կը փնտռուի Աֆիոն Գարահիսարցի Սահակ Չիլինկիրեան եւ իր կինը՝ Հռիփսիմէ, որոնք 4-5 ամիս առաջ կը բնակէին Լիոնի Մարշէին մօտ: Իմացնել իրենց աղջկան՝ Տիկ. Մարիամ Թօփուզըղեանի, 4, rue Blanqui, Փարիզ (13):



---

Le Gérant : H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Damesme :-: PARIS (13e)